*30  Հունիսի 2008թ.*

**Բարև  Ձեզ  Պր. Դավիդ  Այք,**

Թույլ տվեք ներկայացնել ինձ: Իմ անունն է Հայկ Նազարյան և ես 19 տարեկան եմ: Ամենից առաջ ես կցանկանայի հայտնել իմ գոհունակությունը Ձեր կատարած և այժմ էլ շարունակվող գործունեության հանդեպ: Դուք լրիվ բացեցիք իմ աչքերը հասկանալու համար թե ի՞նչ է կատարվել և թե ի՞նչ է կատարվում այժմ աշխարհում: Դուք ամեն գնով տարածում եք ճշմարտությունը և դրա համար ես շատ երախտապարտ եմ Ձեզ: Ես ունեմ բոլոր Ձեր պատրաստած տեսաժապավենները և ունեմ համարյա բոլոր Ձեր գրած գրքերը: Ես կարդացել եմ Ձեր գրած գրքերից ամենակարևոր և ամենաազդեցիկ երեք գրքերը՝ («Ամենամեծ Գաղտնիքը», «Պատրանքի Ջավակները» և «Համաշխարհային Դավադրություն»), և պետք է ասեմ որ բոլոր այդ գրքերը իրապես հոյակապ են:

Իմ այս գրության նպատակը այն է, որ նախ և առաջ շնորհակալություն հայտնեմ Ձեզ այս բոլոր հետազոտությունների համար, ինչպես նաև օգտակար լինեմ Ձեզ Ձեր հետազոտությունների մեջ: Դիտելով Ձեր թողարկած տեսաժապավենները և կարդալով Ձեր վերը նշված գրքերը, ես նկատեցի որ Դուք շատ անգամ խոսում եք հնադարյան տարբեր քաղաքակրթությունների և երկրների մասին և ես ապշած եմ որ Դուք երբեք չեք հիշատակում Հայաստանը:
Դուք միշտ կրկնում եք որ Մերձավոր Արևելքը շատ կարևոր տարածաշրջան է և Դուք կատարել եք շատ հետազոտություններ այդ կարևոր աշխարհամասի վերաբերյալ: Բայց Դուք երբեք որևէ բառ չեք հիշատակել Հայաստանի մասին, որը աշխարհի ամենահին և հրաշքով անհետացումից փրկված ազգերից մեկն է: Հնագույն ժամանակներից մենք՝ Հայերս, գերիշխող ենք եղել այդ տարածաշրջանում, հետևաբար մենք ունեցել ենք շատ մեծ ազդեցություն մեր հարևան երկրների վրա: Շատ փաստեր կան այդ մասին, որ Դուք ցանկության դեպքում կարող էիք գտնել դրանք հեշտությամբ, մի փոքր ջանք գործադրելով: Ահա թե ինչու ես այնքան զարմացած եմ Ձեր վրա, որ Դուք նույնիսկ մեկ անգամ չեք հիշատակել Հայաստան բառը, կարծես թե դա լինի արգելված գոտի Ձեր համար:

Ես ցանկանում եմ Ձեզ ներկայացնել որոշ բաներ Հաստանի պատմության մասին, որոնք Դուք ապազայում, ցանկության դեպքում, կարող եք օգտագործել Ձեր հետազոտությունների մեջ: Հայաստանը ունի շատ հազարամյակների պատմություն(հիմնականում անհայտ) և շատ պատմաբանների ու աստվածաբանների կողմից համարվում է այն կարևոր վայրը որտեղից քաղաքակրթությունն է առաջացել ու տարածվել: Վիշապաշնչի մեջ նշված

Դրախտը և Արարատ լեռը գտնվում են պատմական Հայաստանում, որոնք մարդկության առաջացման և տարածման երկու կարևոր օրրանն են եղել։ Նույնիսկ այժմ Արարատ լեռը հանդիսանում է Հայաստանի խորհրդանշանը և հոգևոր տունը։ Արարատը լեռը նաև Արիական ցեղի մաքառումների և սխրագործությունների սրբազան վայրն է եղել ընդեմ վիշապածինների։




**Քաղաքակրթության զարգացման կարևոր աշխարհամասը ըստ Վիշապաշնչի։ Այս քարտեզը տպագրվել է Ֆրանսիացի քարտեզագետ Փիլիփ Բուշի կողմից 1783թ.։ Ինչպես երևում է քարտեզից Դրախտաշխարհը գտնվում է Պատմական Հայաստանի տարածքում՝ Արարատից հարավ-արևմուտք։**

Ինչպես Դուք գիտեք Բելը վիշապազուն խառնածին էր և հանդիսանում էր հնադարյան Բաբելոնի տիրակալը։ Դուք նշել էիք այս մասին Ձեր գրքերում շատ անգամ, բայց Դուք մոռացել եք հիշատակել այն անձը, ով սպանեց Բելին։ Այդ հերոսը Հայ Ազգի նախահայրն էր՝ Հայկ Նահապետը, ով իր երկաթածառից շինած հսկա նետով սպանեց վիշապազուն Բելին և Հայաստանը մնաց անկախ և ինքնիշխան։

Ես ցանկանում եմ ասել, որ իմ հաստատ համոզմամբ, Հայաստան երկիրը մեր մոլորակի վրա Արիական քաղաքակրթության բնօրրանն է։ Ինձ նորից

զարմացնում է այն, որ տեսնելով թե Դուք ինչքան հաճախ խոսում եք Արիական ցեղի մասին և չեք ասում մի բառ անգամ Հայաստանի կամ Հայերի մասին:

Հայկական Լեռնաշխարհից սկսվեց Արիական ցեղերի տեղաշարժը դեպի Եվրոպա - որոնք հայտնի դարձան որպես Փյունիկացիներ և Պարսկաստանի վրայով դեպի Հնդկաստան, որոնք հայտնի դարձան որպես Արիացիներ...Կան շատ ապացույցներ, որոնք կարող են հավաստել իմ ասածների ճշմարտացիությունը:




**«Գիտական Ամերիկա», Մարտ 1990թ., էջ 110**
**Արիացիների տեղաշարժերը Հայկական Բարձրավանդակից**

Արիացիները հայտնագործելով և օգտագործելով նոր տեսակի զենքեր, ինչպես օրինակ - երկաթյա նիզակներ և զրահներ, մարտակառքեր և այլն, հյուսիսից (Հայկական Բարձրավանդակից) հարձակվեցին, գրավեցին և տիրեցին Փարավոնների Եգիպտոսը մոտ 100 տարի: Հույն պատմիչ Հերոդոտը այդ հաղթող ցեղին անվանեց Հիքսոս, որը մեր՝ Հայերիս, հունական անվանումներից մեկն է: Ինչպես նույն Հերոդոտը հայկական միրգ ծիրանը անվանեց արմենիկուս, որը հետագայում հնչյունափոխվելով դարձավ աբրիկուս(տ):

Եկեք չմոռանանք Բաբելոնի հնագույն քարտեզը կավե սալիկի վրա, որտեղ այդ ժամանակվա հայտնի, բայց այլևս գոյություն չունեցող, մի քանի հզոր երկրների շարքում նշված է նաև Հայաստանը:

Բայց Հայաստանը միշտ եղել է և կլինի:

Ասորա - Բաբելոնյան տիրակալ թագուհի Շամիրամը շատ անգամ է հիշատակվում Ձեր գրքերում... Գոյություն ունի առասպել Հայ Արքա Արա Գեղեցիկի մասին, ով մերժեց Շամիրամի ամուսնության և ամբողջ Աշխարհի տիրակալ դառնալու առաջարկը: Շամիրամը զայրացավ Արա Արքայի այդ հանդուգն մերժումից և պատերազմ սանձազերծեց Հայաստանի դեմ, հրամայելով Արա Արքային գերի վերցնել կենդանի: Սա մի պարզ օրինակ է, որը ցույց է տալիս, թե ինչպես վիշապ ցեղի թագուհին ցանկանում է տիրանալ մաքուր Արիացու արյանը, որպեսզի նրանք գործադրեն Խավարիչների վիշապ-արիացի խառնացեղ ստեղծելու ծրագիրը:



**Բաբելոնական կավե տախտակ**
**Ամենահինագույն մեզ հասած քարտեզը**




**Բացատրական գծագրություն**
**Հայաստանը նշված է վերևի աջ մասում**

Ձեր գրություններում Դուք բազմիցս անդրադարձել եք նաև հնադարյան տարբեր ազգերի առասպելներին, ցույց տալով թե ինչպես դրանք կապված են վիշապապաշտության հետ: Վահագն, որ հայտնի է որպես վիշապաքաղ, Հայկական դիցարանի երրորդ աստվածն է: Վահագնը նույնպես ամպրոպի, կայծակի և պատերազմի աստվածն էր: Հայոց Արքաները և սպարապետները պատերազմ գնալուց առաջ հայցում էին Վահագնի աջակցությունը: Ես նաև համոզված եմ, որ մեր Վահագն աստծո կերպարից են առաջացել սուրբ Գևորգի և մյուս ազգերի վիշապաքաղ հերոսների կերպարները:





**Հայկ Նահապետի արձանը Հայաստանում**

**Վիշապաքաղ Վահագնի արձանը Հայաստանում**

Մի քանի ավելի հետաքրքիր փաստեր ևս։ Քարահունջը, դա հնագույն մի կոթող է, որը գտնվում է ներկայիս Հայաստանի Սիսիան շրջանում։ Այդ կոթողը կազմված է 204 քարաբեկորներից, որոնց վերագրել են տիեզերական ուժեր։ Համաձայն հնագետների Հայաստանի Քարահունջը 3500 տարով ավելի հին է քան Անգլիայի հարավում գտնվող հանրաճանաչ Քարահունջը։



**Հայկական Քարահունջը**

Նեմրութ լեռը, որը այժմ գտնվում է Թուրքիայում(բայց առաջ դա Հայաստանն էր), հանդիսանում էր Հայկական աստվածների դամբարան, շրջապատված Հայ աստվածների հսկա արձաններով: Սա մի արտառոց ճարտարապետական կոթող է և որը համարվում է աշխարհում ամենաբարձր տեղանքում կառուցված մեծագույն շինություններից մեկը:



**Նեմրութ Լեռը**

Դժբախտաբար Հայաստանը դարձավ աշխարհի առաջին երկիրը, որին Խավարիչները ներարկեցին իրենց իսկ ստեղծած Քրիստոնեության թույնը և բռնի ուժով դարձնելով այն որպես Հայաստանի պետական կրոն: Օտարածինների կողմից Հայկական պետականության գրավումից անմիջապես հետո նրանք այրեցին, ոչնչացրին բոլոր մեր գրադարաններն ու արքունական մատյանները, որոնք պարունակում էին ամբողջ մեր Հայկական և համաշխարհային պատմությունը, գրականությունը և գիտությունը: Այդ օտարածին վայրագ ցեղը լրիվ գլխատեց մեր քրմական դասակարգը իրենց ընտանիքներով հանդերձ, ինչպես նաև հիմնահատակ քանդեց մեր բոլոր հեթանոսական տաճարները, բացառությամբ միակ փրկված Գառնիի տաճարից: Դա մեր ազգի պատմության ամենասև ժամանակներից մեկն էր:

Այնպես որ քրիստոնեության ներարկումից 150 տարի հետո Հայաստանը, որ ուներ շատ զարգացած գիտություն և գրականություն, <u>դարցավ մի երկիր առանց այբուբենի և պատմության</u>: Ինչո՞ւ Խավարիչները այդպիսի վայրագ գործողությունների դիմեցին հատկապես Հայաստանի նկատմամբ և ոչ Հռոմի,

Հունաստանի կամ որևէ այլ Քրիստոնեություն ընդունած երկրի նկատմամբ: Այդ մյուս Քրիստոնյա դարձած ազգությունները կարողացան հիմնականում պահպանել իրենց հնադարյան պատմությունը, գրականությունը և այլ սրբազան գիտելիքներ, բայց ոչ մենք՝ Հայերս: Միթե՞ սա չի ապացուցում այն, որ Հայաստանն(Armenia) է Արիական քաղաքակրթության բնօրրանը և Խավարիչները շատ լավ գիտեն, որ եթե նրանք ցանկանում են լրիվ ոչնչացնել մի քաղաքակրթություն, ապա նրանք պետք է սկզբից արմատախիլ անեն բուն հիմքը:

Պր. Այք, Դուք շատ անգամ խոսում եք, թե ինչպես Խավարիչները կազմակերպել են շատ պատերազմներ և ցեղասպանություններ, բայց նորից Դուք ոչ մեկ անգամ չեք հիշատակել 1915թ. ամենաասարսափելի Հայկական ցեղասպանությունը, որը ծրագրավորեցին և իրագործեցին Սիոնիստները և Մասոնները: Բայց Հայկական ցեղասպանության իսկական կազմակերպիչը խառնածին վիշապ Ռոդսշիլդն էր: Որը ի նպաստ Վիշապների ցեղի ծրագրի իրագործման զոհաբերեց մեկուկես միլիոն արիացի հայերի: Իսկ մեր ամբողջ շարժական և անշարժ ունեցվածքը մի հարվածով դարձավ ծածուկ հրեա-թուրքերի ունեցվածքը:

Բայց Հայկական ցեղասպանության ի կատար ածողները եղան Սիոնիստների կազմակերպած Երիտ Թուրքական կուսակցությունը, որոնք հեղաշրջում կատարեցին Օսմանյան Թուրքիայում... Ձեր գրքերը և այլ դավադրություններ(conspiracy) բացահայտող բազմաթիվ հեղինակությունների գրվածքները կարդալուց հետո, ես ցնցված եմ և զայրացած, որ ձեզանից ՈՉ ՄԵԿԸ մի բառ անգամ չի հիշատակել Հայաստանի մասին, որը անկյունաքարն է այն ամենի ինչի մասին որ դուք խոսում եք: Դուք պետք է կույր լինեք որ չտեսնեք կապը Հնադարյան Աշխարհի և Հայաստանի միջև:

Ես հասկանում եմ որ Խավարիչները **Հայ** և **Հայաստան** բառերը դրել են արգելված արտահայտությունների ցուցակի մեջ և նրանց ծառաները կատարում են այն հլու-հնազանդ ստրուկի պես: Այն ինչ որ ես այստեղ բացատրեցի և պարզաբանեցի Հայաստանի պատմության մի չնչին ուրվագիծն է միայն: Այս իմ նշած բոլոր փաստերին Դուք պետք է վերաբերվեք լրջորեն, որովհետև ես հավատում եմ որ դրանք մեծապես կնպաստեն Ձեր հետազոտություններին և մենք ավելի ճիշտ պատկերացում կունենանք անցյալում կատարված և ապագայում կատարվելիք դավադրությունների մասին:

Հարգանքներով՝

**Հայկ Նազարյան** ( haik@nazaryan.com )